# ԶԻՆՈՒՈՐԱԿԱՆ

Zinuorakan otewan tsitsagha-

# ՕԹԵՒԱՆ

sharzh

## ԾԻԾԱՂԱՇԱՐԺ ԿԱՏԱԿԵՐԳՈՒԹԻՒՆ

## Ի ՄԻ ԱՐԱՐ

Թարգմանեալ ի գաղղիերէնէ

ՆՈՒԻՐԵԱԼ

ԱՌ

ԱՐԻԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

ՏԻՐԱՆ Գ. ՓԱՓԱԶԵԱՆԷ







Կ. ՊՈԼԻՍ

ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ ՏՆՏԵՍԵԱՆ

1881

# ԱՆՁԻՆՔ

ԲԱՐԲԱՆԻԿՈՍ. — Գիւղացի:

ՊՐԻՃԻՏԷ. — Իւր կինը:

ԲԱՆԿՐԱՏԻՈՍ. — Պրիճիտէի վարժապետ սիրահարը:

ԲԷԹՐԱՔՕ. — Ցիսճապետ:

ՊՐՈԿՈԼՈՍ. — Ծառայ:

# ԶԻՆՈՒՈՐԱԿԱՆ ՕԹԵՒԱՆ

## ԶԱՒԵՇՏ Ի ՄԻ ՀԱՆԴԷՍ

**Տեսարանն է առ Սարապան լերամբք ի Թրասմաղ գեղջ :**

## ՏԵՍԱՐԱՆ Ա.

*Գեղջկական տնակ մը. մէկ կողմէն դուռ. միւսէն սանդուղ. առանկից տնակ մը կը ծացուի :*

Գրոկոլոս եւ Գրիճիստէ

Գրոկ. *Բամբիս այս սիրեցեալ Գրիճիտէ տուկինս. մենք կը յոգնինք տէրերնիս կուտեն, մենք կը մշակենք, անոնք կը հնձեն. բան մ՚ալ վաստըկինք նէ չէնքով շնորհքով՝ կը գողնան :*

Գրիճ. *Հովը պզտի յարդերը կը յափշտակէ, ստակ ստակի ետեւէն կը վազէ, չե՞ս գիտեր :*

Գրոկ. *Ես ալ ասոր կը բարկանամ որ սա մեծա-*

մեծները թէ ունեցածնիս կը գողնան, եւ թէ միշտ իրաւունք ունին։

Պրին. Աշխարհս միշտ ասանկ եղած է։

Պրոկ. Էրիկդ ինծմէ բաղդաւոր է։

Պրին. Ի՞նչ ըսել է։

Պրոկ. Մեկտեղ սեղան կը նստիս. դեռ ի՞նչ կուզես։

Պրին. Ընտանեաց տէր մարդու մը ի՞նչ կըլլայ անկից օգուտ։

Պրոկ. Երկու գլուխ էք, պաւակ չունիք բան չունիք։

Պրին. Քեզի բան մը ըսե՞մ. թող էրիկս քովս ըլլայ, ուրիշ բան չեմ ուզեր. (Քէչուսէ) ի՞նչ ճանճրացուցիչ մարդ։

Պրոկ. Նայէ այս գիշեր դուրսը պիտի միայ։

Պրին. Նորէն կըսեմ, ես ատոր չեմ հաւնիր։

Պրոկ. Առաջին անգամ կը տեսնեմ որ կին մը տխուր ըլլայ էրկանը չգալուն վրայ։

Պրին. Անկէ հասկցիր որ տունը չեղած ատեն՝ մութը կոխելուն պէս անկողին կը մտնամ. (Քէչ.) դեռ ալ չերթար։

Պրոկ. Կարելի՞ բան։

Պրին. Եթէ հոս չըլլայիր, մինչեւ հիմա քնացած էի, (Քէչ.) չի հասկնար։

Պրոկ. Անանկ է նէ ելլամ երթամ. գլխու ցաւ ըլլալ չեմ ուզեր։

Պրին. Գիշեր բարի տէր Պրոկոլ. շատ շատ բարեւ կնկանդ (Քննելու վրայ)։

Պրոկ. Գլխուս վրայ, միաս բարով... չմոռնաս, էրիկդ երբ գայ ըսես որ իրեն ըսելիք մը ունիմ։

Գրին. (Մեկուսի) Գոցուելու բերան, (Բարձր) կըսեմ, կըսեմ, գիշեր բարի։

Գրոկ. Գիշեր լոյս բարի (Մեկնի)։

---

## ՏԵՍԻԼ Բ.

Գրինիսէ առանձին վերջը Ցիսնապետ

Ինչ է նէ գնաց. կարծես թէ կամաւ կընէր. աղէկ որ երեսս ալ կը բռնէ. եթէ առանկ չընէի. ո՞վ գիտէ մինչեւ երբ հոս պիտի մնար. այսպէս ընելս աղէկ եղաւ. հրիկս ալ չեկաւ դեռ. (դրսէն դուռը զարնելէ) դուռը կը զարնեն, ինքը ըլլալու է, երթամ բանամ. (ծռելով կերթայ) ո՞վ է այն։

Ցիսնա. (Դրսէն) Զինուորական օթեւան մը։

Գրին. (Մեկ.) Զինուորական օթեւա՜ն մը, վա՜յ ինծ, ի՞նչ ընելու եմ։

Ցիս. (դրսէն) Կը բանա՞ս թէ ոչ. ցրտէն կը սառսըռիմ... դուռը։

Գրին. Մինակ եմ։

Ցիս. (դրսէն) Մինակ կամ ընկերով, չէ նէ դուռը վար կ՚առնեմ։

Գրին. Ճար չիկայ, բանալու է. (կը բանայ ցիսնա-պետը կը մտնէ)։

Ցիս. Ռո՛ւմբ եւ կայծակ. այսչափ դժուա՞ր է դուռ մը բանալը։

Գրին. Կը վախնայի...։

Ցիս. Սատանա՞ն եմ ես որ կը վախնաս... Բարբանիկոսին տունը աս չէ՞. ահա տոմսակը։

Գրին. Ճիշդ ան է։

Ցիս. Իւր կինը ըլլալու ես։

Գրին. Այո պարոն, (Ձկ.) ի՞նչ ժամանակ գտաւ։

Ցիս. Շիտակն ըսեմ, էրկնէդ աւելի կը սիրեմ զքեզ։

Գրին. Կը ճանչնա՞ս զինքը։

Ցիս. Չէ բայց ինծի այնպէս կերեւայ։

Գրին. (Ձկ.) Ասոր ձեռքէն ի՞նչպէս ազատելու է։

Ցիս. Ըսէ՛ նազելիս ամուսինդ ո՞ւր է։

Գրին. Անտառը գնաց. այս երեկոյ չիգար։

Ցիս. Ցարմար ատեն եկեր եմ ձեզի հետ ընկերակցելու։

Գրին. Շնորհակալ եմ. մեղք որ քունս եկած էր. (Ձկ.) աս պակաս էր։

Ցիս. Գիւղացիի կերպեր մի բանեցներ։

Գրին. Ցուսամ որ խոհեմ էք, եւ այս պատեհութենէն ծղուտ մը չէք քաղեր։

Ցիս. Այդ ալ խօ՞սք է. քիչ մը հետդ մնամ. քանի մը գաւաթ գինի նետեմ. եւ մինչեւ որ քունս գայ երգեմ ու խօսիմ. անկէ աւելին չեմ ուզեր։

Գրին. Շնորհակալ եմ պարոն, բայց իմ աչքերս քունէն ծանրացած են. (Ձկ.) ի՞նչպէս խալըսելու է ասոր ձեռքէն։

Ցիս. Բայց ես դեռ նոր եկայ, քիչ մը հետս կենալու ես։

Գրին. Ըսածդ ըլլալու բան չէ. երբ էրիկս հոս չըլլայ, շուտ մը սենեակս կը քաշուիմ, եւ չի

ճանչցած մարդուս հետ չեմ տեսնուիր:

**Ցիս.** *Տեսնուէ որ ճանչնաս:*

**Պրին.** *Խօսք չէ՞ս հասկնար:*

**Ցիս.** *Բարբանիկոսի պէս ամուսին մը ունենալէդ ետեւ, այսչափ կտրտուելդ ի՞նչ պիտի ըլլայ:*

**Պրին.** *Ի՞նչ ըսել կուզես պարոն. մենք պարկեշտ կողակիցներ եմք. կը հասկնա՞ս:*

**Ցիս.** *Այսօր ահա կանանց մէջ առաքինին գտայ:*

**Պրին.** *Ուզածդ ըսէ, բայց գիտցիր որ այս լերանց մէջ կը բնակին պարկեշտութիւն եւ առաքինութիւն:*

**Ցիս.** *Տասներկու տարի է որ զինուոր եմ. աշխարհ պտըտեցայ, կրնամ ըսել թէ դեռ նմանդ տեսած չէի:*

**Պրին.** *Գեղեցիկ գաղափար մը ունիս կանանց վրայով:*

**Ցիս.** *Ի՞նչ ընեմ, գործերնէն կը դատեմ:*

**Պրին.** *Լաւ, բայց ձգէ որ գործս երթամ, այս է քու ճրագդ, այս սանդուղէն վեր ելածիդ պէս պառկելու սենեակդ է:*

**Ցիս.** *Քունս եկած չէ:*

**Պրին.** *Իմս եկաւ, գիշեր բարի:*

**Ցիս.** *Անունդ ի՞նչ է:*

**Պրին.** *Պրինճիտէ:*

**Ցիս.** *Ինչ անուշիկ անուն. եկուր Պրինճիտէ, Գաղքայի գինւոյ գաւաթ մը պարպենք:*

**Պրին.** *Ջեմ ուզեր, չեմ ուզեր, կը հասկնա՞ս:*

**Ցիս.** *Խմելու է, ճար չի կայ:*

**Պրին.** *Ալ բաւական է, քաջ զօրական մը իւր պատիւը կը ճանչնայ:*

Ցիս. *Այդ ծանր լեզուիդ պատասխանելովդ, ես ալ պիտի ըսեմ որ, տանտիկնոջ մը խորհուրդներուն կարօտ չեմ, հասկցա՞ր, լաւ, գնա պառկէ, վաղը յուսամ թէ աւելի քաղաքավար կըլլաս։*

Գրին. *Վաղուան համար խօսք չունիմ. գիշեր բարի, ճրագը մարէ որ վտանգ մը չըլնէ։*

Ցիս. *Հոգ մի ըներ։*

Գրին. *(Դէ.) Փառք Աստուծոյ աղէկ խալըսեցայ. (Դուրս)։*

Ցիս. *Որո՞ւ մտքէն կանցնէր որ տասնի լեռնային տեղ մը այսպիսի առաքինի կին մը կը գտնուէր, բայց վաղը աւոր երակը աղէկ մը քննել կ'ուզեմ (մտնելով կը փակէ)։*

---

## ՏԵՍԻԼ Գ.

*Բանկրաֆլոս դուռը բանալով մտնէ. կը խօսի. ու ձեռնափայտ մը տուած է. կողով մը ուտելեօք լեցուն։*

Բանկ. *Այս մթութիւնն ի՞նչ ըլլալու է, արդեօք իմ աղուորիկ սիրունիկ Գրինձիտէս քնանալո՞ւ գացեր է, քիչ մը կենալ պէտք եղաւ սատեղ, պահածներս կորսել չեմ ուզեր, կամացուկ մը երթամ իմ Գրինձիտէիս սենեկին դուռը փնտռեմ։*

---

# ՏԵՍԻԼ Դ.

Նոյն, Գրիճիտէ (կը մտնէ)

Գրիճ. *Մութը կոխեց, կարծեմ թէ գնացած ըլլալու է մեր պարոնը։*

Բաճկ. *Մօտն ըլլալու եմ, բայց այս խաւարիս մէջ բան մը չեմ տեսնար։*

Գրիճ. *Հոս մէկն ըլլալու է. ինչպէս կը դողամ։*

Բաճկ. *Թէ որ չեմ խաբուիր, ոտնաձայն կայ։*

Գրիճ. *Ա՛տ ո՞վ է։*

Բաճկ. *Ես եմ։*

Գրիճ. *Դու ո՞վ ես։*

Բաճկ. *Իմ Գրիճիտէս, ես եմ չճանչցա՞ր։*

Գրիճ. *Ի՞նչ անիծեալ սովորութիւն ունիս, այսպէս գաղտուկ ներս մտնելու, ըսի քեզի ուրիշ անգամ որ հոս մարդ չեղած ատեն բանալիդ չի գործածես։*

Բաճկ. *Բայց ամուսինդ դուրսն է. եւ կարծեմ թէ...։*

Գրիճ. *Չգիտե՞ս որ վայրկեան մը առաջ զինուոր մը եկաւ հոս գիշերն անցնելու։*

Բաճկ. *Վա՜յ թշուառական։*

Գրիճ. *Կամաց խօսէ, կեցիր երթամ ճրագը առնեմ* (կ՚երթայ)։

Բաճկ. *Գնա սիրունիկս եւ անհամբեր քեզի կ՚սպասեմ. աս զինուորին գալն էր պակաս, որ համբերութիւնս հատնի, զինուոր ըսածդ կնկան մը հետ մինակ ձգելը աղէկ բան չէ. մանաւանդ*

*Գրինճիտէի պէս աղւոր աչուկ մը... ո՛չ, ... աչքերս չորս բանալու եմ։*

Գրին. *Ահա ճրագը։*

Բանկ. *Փառք Աստուծոյ որ լոյս աչքով երեսդ տեսայ։*

Գրին. *Ձայն մի հանէր, այդ գինուորին վրայ շատ ապահով չեմ։*

Բանկ. *Յոգնած ըլլալու է որ կը քնանայ։*

---

# ՏԵՍԱՐԱՆ Ե.

Նոյնք եւ Ցիսնայես (անդրադարձին վրայէն)

Ցիս. (Դէկ.) *Վարը մէկն ըլլալու է։*

Գրին. *Ի՞նչ աղէկ բաներ բերիր հետդ նայիմ։*

Բանկ. *Ահա մեր փոքրիկ ճաշը։*

Ցիս. (Դէկ.) *Լաւ, ես ալ կը ճաշեմ։*

Գրին. *Կողովին մէջ ինչե՞ր կան։*

Բանկ. *Մաքարօնեաներ... բայց ի՞նչ բան... ըհ; մա, մա, մա, մա։*

Ցիս. (Դէկ.) *Մաքարօնեաներուն սիրահարն եմ։*

Բանկ. *Ու քեզի խոզի ազդր մը խորոված։*

Ցիս. (Դէկ.) *Այդ ալ կը կլլեմ։*

Բանկ. *Այս երշիկը սքանչելի է։*

Ցիս. (Դէկ.) *Սքանչելի՛, որովհետեւ գինի կը վերցնէ։*

Գրին. *Հիմա խելքս կը թռցնեմ։*

Ցիս. (Դէկ.) *Ես ալ։*

**Բանկ.** *Ասոնք երկու շիշ հին գինի են, որ բարեկամ մը ինձ ընծայեց։*

**Ցիս.** *(Մէկ) Հին գինի՜... ո՜վ բաղդ։*

**Բանկ.** *Ի՞նչ կըսես։*

**Գրին.** *Սա մաքառօնեաները տաքցնելու է, քառորդի մը գործ է։*

**Ցիս.** *(Մէկ.) Իրաւ անոնց պաղը չուտուէր։*

**Բանկ.** *Գնա ես ամէն՝ բան կարգի կը դնեմ... բայց շուտ եկուր կոկորդս թմբուկ կը զարնէ։*

**Գրին.** *Երթալ գալս մէկ կըլլայ (դռնակներէ կը դառնէ)։*

**Բանկ.** *Սիրած մարդուդ հետ ուտես նէ ախորժակդ կը տասնապատկի։*

**Ցիս.** *(Մէկ.) Իմ ախորժակս դրդուելու կարօտ չէ։*

**Բանկ.** *Սեղանը դնենք։*

**Ցիս.** *(Մէկ.) Ի՞նչ տաք արիւն մարդ է։*

**Բանկ.** *2 սկաւառակ, 2 սրբիչ, զոյգ մը՝ գաւաթ ամէն բան տեղն է։*

**Ցիս.** *(Մէկ.) Իմինս պակաս է։*

**Բանկ.** *Երթամ աղ պղպեղ եւ այլն բերեմ։*

**Ցիս.** *(Մէկ.) Սըւոր երեսը նայեցէք, տաք տաք ապտակ մը իջեցնելու ախորժս կու գայ, բայց անուշութեամբ երթանք։*

**Բանկ.** *Ա՛յ սիրունիկս, որչափ ալ ուշացաւ, երթամ նայիմ ի՞նչ կըլնէ։*

**Ցիս.** *(Մէկ.) Մի՛ երթար, մի երթար, գործդ գէշ կըլլայ։*

**Բանկ.** *Ա՛հ եկաւ (Գրինին դառնալ)։*

**Գրին.** *Մինչեւ որ եփի քիչ մը խօսինք։*

**Բանկ.** *Այո աղուորիկս, խօսինք, նայինք սա զինուոր ըսած մարդը ինչպէս մարդ է, սպայ է։*

Գրին. *Ձեմ կարծեր։*

Բանկ. *Պարզ զինուո՞ր է։*

Գրին. *Այդ ալ չէ։*

Բանկ. *Ուրեմն ի՞նչ է։*

Ցիս. (Դկ.) *Հիմա պիտի տեսնես։*

Գրին. *Ըստ իս վաճառի սպայ մըն է։*

Բանկ. *Աս ճախորդ եկաւ, ասոնք անկուտի են եւ շատ զուարճանալ կ'ուզեն։*

Ցիս. (Դկ.) *Ես քեզի կը հասկցնեմ ինչ ըլլալս։*

Բանկ. *Թէ որ վաղը ամուսինդ չի գայ, ես հոս տեղուանքը պիտի թափառիմ։*

Ցիս. (Դկ. *Ո՞ւր տեղէն բռթաւ այս նորաձեւ ասպետը։*

Գրին. *Վաղը դպրոց չի գա՞յ։*

Բանկ. *Ի՞նչ դպրոց, ինչ դպրոց։*

Գրին. *Ի՞նչ պիտի ընես, վերջէն չըսին որ...։*

Բանկ. *Ընելիքնին ի՞նչ է, վաղուան տեղ գալ հինգշաբթի կուտամ։*

Ցիս. (Դկ.) *Աղէկ դասատու մը։*

Գրին. *Թէ որ մէկը տեսնէր...։*

Բանկ. *Աւելորդ խօսքեր մի ըներ իմ նազելիս, այսպիսի պարագայի մը մէջ զգուշութիւն պէտք է։*

Ցիս. (Դկ.) *Ես ալ դաս կառնեմ, նայինք ինչպէս պիտի պատասխանեմ։*

Բանկ. *Վշտացած ըլլամ նէ, բարկութիւնս տղաքներէն կը հանեմ։*

Ցիս. (Դկ.) *Այդ տղայոց վրէժն ես պիտի լուծեմ*

Գրին. *Նայէ՛, եթէ ճախորդ ըլլայ մախճանը մէջ մ'ալ տունս ոտք չես կոխեր։*

Բանկ. *Հիմա երթանք փորերնիս կշտացնենք։*

Ցիս. (Ձէն.) Երկուքնոցդ ալ ախորժակը հիմա կը գոցեմ։

Գրիճ. Ծրագը առ ու առջեւէն գայէ (Ձիգէն)։

Ցիս. (Ձէն.) Գացէք, գացէք, ես ալ ընելիքս գիտեմ, քիչ մը պատրաստութիւն տեսնեմ։

---

## ՏԵՍԻԼ Զ.

Գրիճիտէ (դրանը յետեւը) Բանկրատիոս (ծրագ և խորտիկ)
Բարբանիկոս (Ներսէն)

Բանկ. Վերջապէս հասանք։

Գրիճ. Ի՞նչ ախորժակ ունիմ։

Ցիս. (Ձէն.) Կ'անցնի, կ'անցնի։

Բանկ. Ապուրը սըտեղ, խորտիկը հոն։

Գրիճ. Երկրաչափութիւն պէտք չէ՛, հոս։

Ցիս. (Ձէն.) Աս մարդը վայելուչ բաներ գիտէ։

Բանկ. Սա մաքառօնէն մէյ մը ճաշակէ նայիմ։

Գրիճ. Մատներս պիտի լզեմ։

Բանկ. Ես ահա այսպէս կ'եփեմ եփածս։

Ցիս. (Ձէն.) Ցարձակելու ժամն է (դրսէն դուռը կը զարնուի)։

Գրիճ. Դուռն է։

Բանկ. Ո՞վ պիտի ըլլայ։

Ցիս. (Ձէն.) Առ քեզի փորձանք մ'ալ։

Գրիճ. Սըսս դ. բերանդ գոցէ. (ծոցէն) ան ո՞վ է։

Բար. Ես եմ, Գրիճիտէ բաց։

Գրիճ. Էրիկս է, ո՛հ բաներնիս բուսաւ։

Բանկ. Էրիկդ... ա՛յ անիծած։

Ցիս. (Ձկ.) Աս ի՞նչ աղուոր տեսահան։

Պրին. Կեցի՛ր ճրագ մը վառեմ ու հագուիմ։

Բանկ. Վայ կերակուրիս գլխուն, լմնցայ։

Բար. (դուրսէն) Պրինճիպէ չի բանա՞ս։

Պրին. Կեցիր սա ճրագը վառեմ, հիմա կուգամ։

Բանկ. Ամեն բան տեղն է... գնա՛։

Պրին. Դուն ո՞ւր կը պահուըտիս։

Բանկ. Զգիտեմ, տենդս բռնեց։

Պրին. Մառանը գնա՛ կծկէ։

Բանկ. Մառա՞նը. ո՛վ երկինք... ես որ կը սոսկամ, կը սարսափիմ մուկերէ։

Պրին. Շո՛ւտ քեզ նայիմ։

Բանկ. Գթութիւն, մկան ճըղը լսածիս պէս ձայնս կը ձգեմ (խուցը կը մտնէ)։

Բար. Պրինճիպէ՛ ի՞նչ կընես չես գար։

Պրին. Հոս եմ (դուռը բանալով)։

---

## ՏԵՍԻԼ Է.

### Նոյնք եւ Բարբանիկոս վերարկուաւ

Բար. Ա՛յ կատղած. տարի մը դրան առջեւ սպասեցի։

Պրին. Իմ սիրուն էրիկս, յանձանքը իմս չէ, անկողինն էի, մինչեւ հագուիմ, մինչեւ ճրագը վառեմ գամ ըսի։

Ցիս. (Ձկ.) Նայեցէք ինչպէս սուտերը իրարու ետեւէ կը գլտորէ։

Բար. *Հագուե՞լդ ինչ պիտի ըլլա՛ր։*

Գրիճ. *Գուցէ հետդ մարդ կայ. ցուրտ ալ է։*

Ցիս. *(Դէկ) Ա՛յ թշուառական կնիկ։*

Բար. *Ինչ ալ կանուխ պառկեր ես։*

Գրիճ. *Ջինուոր մը եկաւ հոս պատսպարուե-լու... չուզեցի որ...։*

Բար. *Աղէկ ըրեր ես։*

Գրիճ. *Վառարանին քովը եկուր, քիչ մը տաքնաս։*

Բար. *Աւելի անօթութիւն կզգամ քան թէ ցուրտ։*

Գրիճ. *Սիրունիկս, տունն ուտելու բան մը չի կայ... բերանս բան մը չդրած անկողին մտայ։*

Ցիս. *(Դէկ.) Իրաւ է, խեղճը բան չի կերաւ։*

Բար. *Խոհանոցն երթանք, գետնախնձոր կայ տաքցնենք մոխիրի մէջ, գինի ալ կայ, հաց ալ կը գտնամ. այս իրիկուն ալ այսպէս թող անցնի։*

Ցիս. *(Դէկ.) Աս չեղաւ։*

Գրիճ. *Երթանք ասկէ. (Դէկ.) հոս կենալ չըլ-լար (Կ'երթայ)։*

---

## ՏԵՍԻԼ Ը.

Ցիսնապէս եւ Բարբանիկոս

Ցիս. *Բարով եկար պարոն Բարբանիկոս։*

Բար. *Աս ո՞վ է։*

Ցիս. *Հիւրդ որ զձեզ ճանչնալ կուզէ։*

Գրիճ. *(Մտքէ) (Դէկ.) Աս մարդը հո՛ս... վայ ինծի չըլլայ թէ։*

Բար. Ի՞նչպէս գիտցար որ:

Ցիս. Լսեցի որ այս կինը իր ամուսինը կը կո-չէր ձեզ, ճանչցայ որ հիւրնկալս դու ես:

Բար. Շնորհակալ եմ ըրած քաղաքավարութե-նէդ, բայց կը կարծէի որ այս ժամուս քնացած ես:

Ցիս. Կը ծխէի երբ դրան զարնուիլը լսեցի, (Ձկ.) կնկան մը քով կէս ժամ կենալ բաւական է վարպետ ստախօս մը ըլլալու համար, (Բարձր) ինչպէս վերջը գոնէ փոքրիկ շնորհք մը խնդրեմ ձեզնէ, (Ձկ.) հիմա փոթորիկը պիտի ճաթի:

Բար. Խօսէ նայինք:

Ցիս. Քովս ուտելու բան չունիմ, ստակը տամ քիչ մը ինծի կերակուր:

Բար. Ես ալ քու վիճակիդ մէջ եմ, բայց Գրիճիտէ կըսէ որ բան չի կայ տունը:

Ցիս. Ի՜նչ դժբախտութիւն... ստակով ալ բան չգտնուի՛:

Գրիճ. Տէ՛ր իմ, այս ժամուս լերան մը ծայրը ի՞նչ ուտելիք պիտի գտնաս:

Ցիս. Գլուխս պատին զարնելու եմ:

Բար. Հաւկի՞թ ալ չի կայ տանը մէջ կնի՛կ:

Գրիճ. Հատ մ՚ալ չի կայ:

Բար. Ցուսահատելի բան է:

Ցիս. Կը մտածեմ:

Բար. Ի՞նչ բանի:

Ցիս. (Ձկ.) Հրացանը պիտի պարպեմ. (Բարձր) ի՞նչ դդում գլուխ ունիմ, գտա՛յ, գտա՛յ:

Բար. Ի՞նչ:

Ցիս. Ուտելու կեր:

Բար. Ի՜նչպէս, ըսէ տեսնեմ:

**Ցիս.** *Ուրախ եղիք, հիմա աղէկ մը կուտենք, ամեն բան գիտնալն ալ ինչ աղէկ բան է։*

**Բար.** *Ըսէ՛ նայինք։*

**Ցիս.** *Վրաս պիտի խնդաք. բայց հոգ չէ, ուտելէն վերջը կը գոհանաք. 12 տարի կայ որ գինուոր եմ։*

**Բար.** *Ասիկայ կերակրոյ հետ վերաբերութիւն չունի։*

**Ցիս.** *Մ՚աճապարեր, Սպանիոյ պատերազմին ատենը վհուկ մը ճանչցայ։*

**Բար.** *Ատ ի՞նչ գէշ բան։*

**Ցիս.** *Այն կինը ինծի շատ դիւթութիւններ սորվեցուց։*

**Բար.** *Գնա՛ սըկեց գնա՛. ո՞ւր տեղէն գլխուս փրթաւ, այս դիւթիչը, այս մոգը։*

**Ցիս.** *Մի՛ վախնար, իմ դիւթութիւններս միշտ աղէկի կելլեն. ես կարող եմ օրինակի համար գիս ատող կնկան մը ինքզինքս այնչափ սիրցնել, որ գայ ոտքս պըլլուի. կնկան մը անհաւատարմութիւնները երեւան կը հանեմ, ուրուականներ կը ցուցնեմ, ասկէ զատ կարող եմ կերակուրներ աներեւութացնել, եւ ամենահեռաւոր մարդիկ հոս բերել ուզածիս պէս։*

**Բար.** *Ատիկայ պա՛րոն ինծի չես կրնար կըլլեցնէր, փորձը, փորձը տեսնեմ։*

**Ցիս.** *Տասը վայրկեանէն հրաշքը երեւան կելլէ։*

**Բար.** *Ի՞նչպէս։*

**Ցիս.** *Երթամ մոգական մատեանս եւ հրացանիս սուինը առնեմ. երկու ճրագ պատրաստէ, մնացածը ինծի թող. երթամ եւ կուգամ. (սենեակը կերթայ)։*

**Բար.** *Դուն ի՛նչ կ՚ըսես սոր կնիկ։*

**Գրին.** *Ես կըսեմ որ յիմար մ՚է։*

**Բար.** *Զգէ նայինք ինչ պիտի ընէ ասիկայ։*

**Ցիս.** *Ահաւասիկ եմ։ (ծըծերով և սուլելով)*

**Բար.** *Ես ալ քեզի կ՚սպասէի. բայց թէ որ չի յաջողիս. պիտի խնդանք վրադ. չի վշտանաս։*

Ցիս. Ձեզի բան մը ըսեմ. ես պատուաւոր մարդ մըն եմ. թէ որ ըսածս չընեմ, 50 ոսկի կուտամ, թէ որ յաջողիմ խօսք տուէք որ զիս ձրի պիտի սնուցանէք, քանի որ հոս եմ. կընդունի՞ք:

Բար. Անշո՛ւշտ:

Ցիս. Փորձի սկսինք, բայց պէտք է որ գիտնամ թէ տանը մէջ ո՞վ կայ:

Բար. Գէշ սկսանք:

Ցիս. Ես աշխարհիս մէկ ծայրէն խօսք կուտամ հոս բերել կերակուրներ, նայինք որո՞ւն կերակուրը պիտի վերցնեմ:

Բար. Իրաւ չգիտեմ:

Ցիս. Այո՛, Սարձանիոյ գիւղին մէջ զիս ամենէն ետքը հիւրնկալողին, որ ուշ եւ լաւ կը ճաշէ:

Բար. Սարձա՛նիա... մեր բնակած գիւղն է, ո՞վ կրնայ ըլլալ այդ թշուառը:

Ցիս. Գիւղիս վարժապետը, որ աղէկ դաս կըրնայ տալ որկրամոլութեան:

Բար. Գիւղիս Վարժապե՞տը, ի՞նչ աղէկ բան, այս վարժապետ ըսուածները քանի մը մարդու չափ կուտեն:

Գրին. (Մէկ.) Վարժապետին անունն ալ տուաւ... հիմա կը կորսուիմ:

Ցիս. Ծրագները դեղին չըլլալուն այս դեղին թղթով քիչ մը լոյսը վարագուրեմ:

Բար. Այս ի՞նչ վախ է սրտիս մէջ:

Ցիս. Ձեւերէս վա՛րմունքներէս, ըսածներս եւ ըրածներէս բնաւ մի՛ վախնաք:

Բար. Շունչս կը բռնեմ, ահա:

Ցիս. Մոռցայ ըսելու որ մարդ գտածը ուտելու է:

Բար. Ուտելու բա՛ն ըլլալէն ետքը, ինչ որ ըլլայ կուտեմ:

Ցիս. Երթամ:

Գրին. Կը սարսափիմ. (Ցինադետը խորը տաղտկալի ժողովրդական մտածութիւններ ունի):

Բար. Կին դու ի՞նչ կըսես, չըլլայ որ փախնաս բան մը ըլլաս։

Գրին. Քեզի պէս խենդ չեմ։

Ցիս. Կա՜ց հրաշէն եւ ռումբ ... երդուեալ յանուն դժոխոց ... կեցի՛ր։

Բար. Ո՞վ կը կանչէ։

Գրին. Սատանան կը կանչէ որ զինքը տակէ տանի։

Բար. Աս իրիկուն դուն կատղեր ես։

Գրին. Հրամմեր ես։

Ցիս. Թարթանիկոս դեռ չի ճաշեց։

Բար. Այո՛ պարոն դեռ չի ճաշեցի։

Ցիս. Հիմա կերակրոց անունը կու տամ, նախ երշիկ կայ. ախռայլիդ կուզա՞յ։

Բար. Ի՞նչ ըսել է ... անուշ աղէկ կը խմուի. բայց ուժ տուող բան մը չի՞կայ։

Ցիս. Ուրախ լեր. մեծ սկաւառակ մը մաքառոնեաններու։

Գրին. (Մեկուսի) Այ անօրէն գլխս կը մատնէ։

Բար. Կնիկս մաքառոնեայ կայ։

Գրին. Իմ ախորժակս գոցուեցաւ։

Ցիս. Թարթանիկոս աւելի աղէկն ալ կայ, խոզի մը խորոված ազդրը։

Բար. Խոզի մը ա՞զդրը, ո՞վ ստամոքս ալ բաւական է. մնացածն ալ իրեն տուր որ ուտէ։

Գրին. (Մեկ) Այ չարաճճի։

Ցիս. Ո՛չ, ունեցածը չունեցածը պիտի վերցնեմ։

Գրին. (Մեկ.) Կայծակ իջնայ գլխուդ։

Բար. Ջէ՛ քարասիրտ մ'ըլլար, իրեն ալ ուտելու բան մը ձգէ։

Ցիս. Ահա մնացորդը, աղցան, պանիր, հաց, եւ 2 շիշ գինի։

Բար. Ո՞վ իմ մանիկս։

Ցիս. Գտիր նայիմ, այս ամենը ո՞ր կողմը բերել տուի։

Բար. Ո՞ր կողմը։

Ցիս. Հոս, վարի մառանը։

Բար. Շուտ երթանք նայինք։
Գրիճ. Բանալին վրան չէ։
Ցիս, Սուրինս բանալիիդ տեղը կը բռնէ։
Գրիճ. (Մեկ.) Օր առաջ լմննայիր։
Բար. Նայէ որ չի կոտրես։
Ցիս. Ինծի թող, հոս բանալի մը կայ, տեսնենք կը յարմարի՞։
Բար. Այս ի՞նչ կարգէ դուրս բան. սըւոր նայինք վերջը ո՞ւր պիտի երթայ։
Ցի. Այո՛ իր բանալին է եղեր. նայեցէք դուռը բացուեցաւ։
Բար. Ո՛վ անակնկալ հրաշք։
Ցիս. Ահա բոլոր ըսածներս։ (կողովով կառնէ)
Բար. Սըվանք ուտենք, կնիկ՝ ելիր ամեն բան պատրաստէ։
Գրիճ. Տեղէս չեմ երերար, խենդենալու միտք չունիմ։
Բար. Անուշութեամբ խօսք չի հասկնաս նէ, կերպս կը փոխեմ։
Գրիճ. Ահա սեղանը։ կե՛ր խմէ, ճաթէ. (Դէկ.) կերածնիդ փորերնուդ մէջ օձեր դառնան։
Ցիս. Ապրիս Գրիճիտէ.
Բար. Նստէ կեր նայիմ աղւորիկս։
Գրիճ. Ե՞ս ուտեմ, թոյն դառնայ։
Ցիս. Բարկութիւնդ ինչէ՞ն է։
Բար. Իմ սիրունիկս, իս մտիկ ըրէ, նստէ՛ կեր, թէ որ ձեռքերուս ուժը ճաշակել չես ուզեր։
Գրիճ. (Մեկ.) ալ համբերութիւնս կը հատնի։
Ցիս. Քեզ տեսնեմ Գրիճիտէ։
Բար. Ի՞նչ երշիկ, ը՛ըըըը։
Ցիս. Ինչ կ'ըսես հրամանք տիկին։։
Բար. Սա մաքառօնիներուն ալ համն առնենք։
Ցիս. Կեցիր բաժնեմ, աս չափը մեր տիկնոջ...։ աս չափն ալ ինծի... աս ալ քեզի։
Բար. Մա մա մա մա, աս ի՞նչ համով բան։
Ցիս. Վարժապետ ըսածիդ կերակուրը ասանկ

*կըլլայ… սա տեղէն ան տեղէն ըսելով, բոլոր աղէկ բաները իրենց բոլը կը նետեն։*

**Բար.** *Մեր գեղի վարժապետն ալ ըսածիդ պէս է։*

**Ցիս.** *Հո՛ս ալ վարժապետ կայ. կը ճանչնա՞ս զինքը։*

**Բար.** *Շատ.., իմ կողակցիս մասնաւոր բարեկամն ալ է։*

**Ցիս.** *Սիրուն Գրիճիտէ, զինքը այսպէս աղէկ ճանչնալէդ ետքը, սա մեզի հանդիպածը պատմէ, աղէկ մը թող խնդայ։*

**Գրիճ.** (Ձէկ.) *սա սրիկան ո՞ւսկից գլխուս փըրթաւ։*

**Բար.** *Ի՞նչ եղեր ես այս իրիկուն կնի՛կ։*

**Գրիճ.** *Խենդ….*

**Բար.** *Ըսէ՛ ըսէ՛, սա սեղանը վերցուր նայիմ.* (Հէնը Բարէնտիներսի տեղանը վերցնէ) *Ի՞նչ կըսես… պարծենալու համար չէ, բայց ես այն էրիկներին չեմ որ կնիկներնէն կը խաբուին. այն էրիկներէն, որոց գլխուն կնիկներնին զանազան բաներ կը բուսցընեն. կը հասկնա՞ս։*

**Ցիս.** *Կը հասկնամ.* (Գրէճ. կը Ձէնէ)

**Բար.** *Ինչ է նէ սիրեցեալ յիսնապետ, եկուր քեզի համբոյր մը դրոշմեմ… բայց չէ… մոգէն կը վախնամ… սա ըսէ ինծի հիմա որ գրաւս կորսնցուցի.,. ինծի շնորհ մը կընե՞ս.*

**Ցիս.** *Համարձակ խօսէ։*

**Բար.** *Սա մոգութիւնդ ինծի ալ սորվեցուր, վասնզի շատ անգամ գործածել պէտք կըլլայ ինծի։*

**Ցիս.** *Վերջէն ասոր վրայ կը խօսինք, հիմա սոսկալի գիւտ մը ցուցնեմ, որ իմ մեծ մոգական գրքիս մէջ կարդացի, բայց չի սարսափիս։*

**Բար.** *Ի՞նչ, սոսկալի գի՞ւտ. հիմակուց քիչ մը կը դողամ, գիւտդ ո՞րն է։*

**Ցիս.** *Բան մը, որ քեզ պիտի զարմացնէ եւ թերեւս վախցնէ, բայց հոս եմ, ամենեւին վախ մ'ունենար։*

Բար. Շուտով ինչ է նէ զրուցէ։

Ցիս. Ջնչին բան, տանը մէջ ուրուական մը պահած ես, որ քիչ մը հանգստութիւնդ պիտի աւրէ։

Բար. Ուրուակա՛ն ... ա՛հ գթութիւն։

Ցիս. Հոգ մի՛ ըներ, ես անիկայ կը վռնտեմ։

Բար. Բայց ո՞ր կողմն է, ըսէ որ սիրտս հանդարտանայ։

Ցիս. Հաւատալիքդ չէ դար, մառանը պահուըտած է։

Բար. Մառա՛նը ... վա՜յ ինծի։

Ցիս. Ինչու աչքիդ զարկած չէ՞։

Բար. Ոչ.. բայց ... այո՛ ... երեւնա։

Ցիս. Բան մը իմացա՞ծ ես։

Բար. Չ'գիտեմ. դուռ մը առաւ գիս։

Ցիս. Տղայութիւնը մէկդի թող, հոս եմ ես։

Բար. Կեցի՛ր.

Ցիս. Ի՞նչ կայ։

Բար. Գրինիտէ՛, Գրինիտէ՛։

Ցիս. Ի՞նչ կուզես։

Բար. Սատուքիւ եմ, Գրինիտէ, Գրինիտէ։

---

## ՏԵՍԻԼ Ծ.

Նոյնք եւ Գրինիտէ։

Գրին. Ի՛նչ կուզես։

Բար. Եկուր հարցուցածիս պատասխան տուր։

Գրին. (Քէն) Վա՜յ թէ որ զիս մատնեց։

Բար. Տանը մէջ բան մը իմացա՞ր։

Գրին. Բա՞ն մը ... ի՞նչ բան։

Բար. Մինակ եղած ատենդ վայնասուն մը լսեցի՞ր։

Գրին. (Քէն.) Փա՛ռք Աստուծոյ, (Բարձր) ի՞նչ աղուոր հարցմունք. չե՞ս գիտեր որ այս լեռներուն